Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8

ԱՊՐԻԼ 1946 Թ.

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏՈՆԸ

*Այս տարի մայիսի 9-ին սովետական բազմամիլիոն ժողովուրդը նշում է Հայրենական պատերազմում տարած պատմական հաղթանակի առաջին տարեդարձը։*

*Անցել է մի տարի։ Սակայն դեռ որոտում է կարծես մեր հզոր հրետանին, ավետելով աշխարհին՝ առաջադեմ մարդկության անօրինակ հաղթանակը՝ ֆաշիզմի խավարամոլ ուժերի դեմ։*

*Մեկ տարի առաջ «Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների զորքերի կողմից ծունկի բերված ֆաշիստական Գերմանիան իրեն պարտված ճանաչեց և անվերապահ կապիտուլյացիա հայտարարեց» (ՍՏԱԼԻՆ)։*

*Եվրոպայի վրա սկսվեց ծածանվել ժողովուրդների ազատության և խաղաղության մեծ դրոշը։*

*Այսպիսով, պատերազմական ժամանակաշրջանը Եվրոպայում ավարտվեց, սկսվեց խաղաղ զարգացման ժամանակաշրջանը։*

Այժմ սովետական ժողովուրդը նշելով իր մեծ Հաղթանակի տարեդարձը, հանրագումարի է բերում ոչ միայն անցած մեկ տարում կատարած իր աշխատանքը, նա ոչ միայն նայում է իր Հայրենիքի լուսաշող ապագային, այլև վերհիշում է հանուն Հաղթանակի Հայրենական պատերազմի տարիներին մղած իր մեծ պայքարը՝ ռազմաճակատում և թիկունքում:

Սովետական ժողովուրդը կրկին անգամ օրինական հպարտության վեհ զգացմունքով արտասանում է իր մեծահանճար առաջնորդի և ուսուցչի — ընկեր Ստալինի խոսքերը. «Մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մեր մեծ զոհաբերությունները, պատերազմի ընթացքում մեր ժողովրդի կրած անթիվ-անհամար զրկանքներն ու տառապանքները, Հայրենիքի զոհասեղանին նվիրված լարված աշխատանքը թիկունքում և ռազմաճակատում՝ ապարդյուն չանցան և պսակվեցին լիակատար հաղթանակով ընդդեմ թշնամու»:

Հիտլերյան Գերմանիայի լիակատար պարտությունից չորս ամիս հետո, սովետական ժողովուրդը փայլուն հաղթանակ



տարավ Գերմանիայի գլխավոր դաշնակից ճապոնական իմպերիալիզմի դեմ: Այսպիսով, մեկընդմիշտ վերացվեց համաշխարհային երկրորդ պատերազմի նախօրյակին ստեղծված ագրեսիայի երկու օջախները՝ արևմուտքում և արևելքում: Վերջացավ երկրորդ համաշխարհային պատերազմը:

Այս տարվա փետրվարի 9-ին արտասանած իր հանճարեղ ճառում ընկեր Ստալինը հանրագումարի բերելով պատերազմի արդյունքները, ասաց.

«Գոյություն ունի մեկ գլխավոր արդյունք, որի հիման վրա ծագել են մյուս բոլոր արդյունքները: Այդ արդյունքն այն է, որ պատերազմի վերջում թշնամիները կրեցին պարտություն, իսկ մենք մեր դաշնակիցների հետ դուրս եկանք հաղթող»:

Սակայն, ինչպես ասում է ընկ. Ստալինը, դա շատ ընդհանուր արդյունք է և դրանով միայն հարցը չի սպառվում:

Պատերազմում ամենից առաջ, հաղթանակեց սովետական հասարակարգը, որպես ժողովրդի ընդերքից աճած, նրա օժանդակությունը վայելող, միանգամայն կենսունակ ու ժողովրդական հասարակարգ:

Մեր հաղթանակը նշանակում է նաև այն, որ հաղթեց սովետական պետական կարգը: Մեր բազմազգ պետությունը պատերազմի ընթացքում բռնեց իր փայլուն քննությունը: Ֆաշիզմի և իմպերիալիզմի դեմ մղված պայքարում է՛լ ավելի ամրապնդվեցին և արմատավորվեցին մեր Հայրենիքի ժողովուրդների ստալինյան բարեկամությունը, եղբայրական համագործակցության զգացմունքներն ու կապերը:

Եվ վերջապես, պատերազմում հաղթանակեցին մեր զինված ուժերը, մեր հերոսական Կարմիր Բանակը՝ բոլոր ժամանակների ամենամեծ զորավար ընկեր Ստալինի ղեկավարությամբ:

Կարմիր Բանակը հաղթող դուրս եկավ պատմության մեջ նմանը չունեցող այդ վիթխարի պատերազմից, որովհետև նա պայքարում առաջնորդվում էր ընկեր Ստալինի հանճարով ստեղծված անթերի ստրատեգիայով ու տակտիկայով, հագեցված էր ժամանակակից տեխնիկայի վերջին խոսքով, ուներ ամենափորձված հրամանատարական կազմ, բարոյական-մարտական բարձր հատկություններ:

Սակայն «Սխալ կլիներ մտածել, թե կա-



րելի է այդպիսի պատմական հաղթանակի հասնել առանց ամբողջ երկիրը նախապես ակտիվ պաշտպանության նախապատրաստելու» (ՍՏԱԼԻՆ):

Երկրորդ համաշխարհային պատերազմից դեռ շատ առաջ, բոլշևիկների պարտիայի առաջնորդներ Լենինը և Ստալինը պարտիային և ժողովրդին շարունակ հիշեցնում էին կապիտալիստական շրջապատման մասին, այն մասին, որ քանի գոյություն ունի այդ շրջապատումը, անխուսափելի կլինի բախումը՝ կապիտալիզմի և սոցիալիզմի միջև: Եվ որպեսզի այդ բախումից մեր երկիրը հաղթող դուրս գա, հարկավոր է նախապատրաստվել:

Բոլշևիկների պարտիան ընկեր Ստալինի ղեկավարությամբ, ջախջախելով և հողմացրիվ անելով իր ճանապարհին կանգնած բոլոր թշնամիներին ու բոլոր արգելքները, անշեղորեն շարունակեց երկիրը ակտիվ պաշտպանության նախապատրաստելու իր իմաստուն քաղաքականությունը: Ու երբ անխուսափելի դարձավ պատերազմը, մեր Հայրենիքը ո՛չ միայն կարողացավ դիմագրավել ուժեղ և նենգ թշնամուն, այլև հաղթել նրան:

Հայրենական պատերազմում ձեռք բերված հաղթանակի շնորհիվ չտեսնված չափերով բարձրացավ մեր երկրի տեսակարար կշիռը միջազգային հարցերում, նրա հեղինակությունը ամբողջ աշխարհի ժողովուրդների աչքում։

Այժմ մենք նշում ենք մեր մեծ հաղթանակի առաջին տարելիցը։ Վերհիշելով պատերազմական ժամանակաշրջանի և այս անցած մեկ տարվա մեր մղած պայքարն ու աշխատանքը, մենք մեր հայացքները ուղղում ենք առաջ՝ դեպի է՛լ ավելի լուսապայծառ ապագան։

Պատերազմը հաղթանակորեն ավարտելուց հետո, մեր Հայրենիքի ժողովուրդները վերսկսել են իրենց խաղաղ, ստեղծագործ աշխատանքը։ Նրանք արդեն ձեռնամուխ են եղել Ստալինյան չորրորդ հնգամյակի պլանի կատարմանը, պլան, որը զարգացման ու ծաղկման փայլուն հեռանկարներ է բաց անում մեր երկրի առաջ։

— Ստալինյան նոր հնգամյակի պլանը կիրագործվի,— այսպես պատասխանեց մեր ժողովուրդը այդ պլանի հրապարակմանը։

Հաղթանակի տոնի առաջին տարելիցը մի զորեղ խթան կդառնա՝ մեր երկրի բոլոր



աշխատավորներին Լենինի-Ստալինի մեծ պարտիայի շուրջը, Սովետական հզոր պետության շուրջը է՛լ ավելի սերտ համախմբելու, մեծ Ստալինի առաջադրած խնդիրները անթերի ու պատվով կատարելու համար։

—o—

# ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

## ԱՌԱՋԱՎՈՐ ԵՎ ՀԶՈՐ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՏԵՐՈՒԹՅՈՒՆԸ

✪ Հարձակվելով սոցիալիզմի երկրի վրա Գերմանիան հանդիպեց մի այնպիսի հզոր հակառակորդի, որպիսին նա չէր տեսել իր ամբողջ պատմության ընթացքում:

Ստալինյան հնգամյակները կերպարանափոխեցին նախկինում հետամնաց մեր երկիրը: Ամբողջ երկիրը նախապես ակտիվ պաշտպանության նախապատրաստելու համար բոլշևիկյան պարտիայի վարած ճիշտ քաղաքականությունը մեր Հայրենիքը դարձրեց առաջավոր և հզոր սոցիալիստական տերություն:

✪ ՍՍՌՄ-ը զարգացավ այնպիսի տեմպով, որպիսին չգիտեր պետությունների պատմությունը: Երկրորդ հնգամյակի վեր-



ջում ՍՍՌՄ արդյունաբերությունը 1913 թվի համեմատությամբ արդեն աճել էր ավելի քան 9 անգամ: Մինչդեռ 1913—1938 թ. թ. արդյունաբերությունը ԱՄՆ-ում աճել էր միայն 20 տոկոսով, Անգլիայում՝ 13,3 տոկոսով, Գերմանիայում՝ 31,6 տոկոսով:

✪ 1940 թվին մեր երկրում արտադրվել էր 15 միլիոն տոննա չուգուն, գրեթե 4 անգամ ավելի, քան 1913 թ., 18 միլիոն 300 հազար տոննա պողպատ՝ 4 և կես անգամ ավելի, քան 1913 թ., 166 միլիոն տոննա ածուխ՝ 5 և կես անգամ ավելի, քան 1913 թ., 31 միլիոն տոննա նավթ՝ 3 և կես անգամ ավելի, քան 1913 թ.:

1913 թվի համեմատությամբ մեր երկրի մեքենաշինության ընդհանուր արտադրանքը աճեց 50 անգամ: Չտեսնված թափով զարգացան արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք էին՝ տանկային, ավիացիոն, ավտոմոբիլային, տրակտորային, քիմիական արդյունաբերությունը և այլն:

✪ Ինդուստրիայի նոր օջախներ ստեղծվեցին՝ Ուրալում, Սիբիրում, Ղազախստանում, Միջին Ասիայում, Անդրկովկասում, Հեռավոր Արևելքում: Լայնորեն ծավալվեցին

«Երկրորդ Բաքվի» նավթահանքերը՝ Վոլգայի և Ուրալի միջև:

✪ Կոլխոզային կարգը յուրաքանչյուր նոր տարի է՛լ ավելի ցայտուն կերպով էր հանդես բերում իր ուժն ու լիակատար կենսունակությունը: 1938 թվականին ցանքերի տարածությունը ՍՍՌՄ-ում հասավ 137 միլիոն հեկտարի, 1913 թվի 105 միլիոն հեկտարի դիմաց: Կոլխոզների և սովխոզների բազայի վրա մեծ հաջողությամբ լուծվում էր տարեկան 7—8 միլիարդ փութ հացահատիկ ստանալու մասին ընկեր Ստալինի առաջադրած խնդիրը:

✪ Երրորդ հնգամյակի սկզբին մեր երկրի գյուղատնտեսության մեջ կար ավելի քան 483 հազար տրակտոր, 150 հազար կոմբայն, ավելի քան 200 հազար ավտոմեքենաներ: Արդի երկիրը դարձավ տրակտորների և կոմբայնների երկիր:

✪ Հին գյուղը բանակ էր ուղարկում անգրագետ, կիսագրագետ մարդկանց, որոնք ծանոթ չէին տեխնիկային:

1938 թվականին կոլխոզներում կար 933 հազար տրակտորիստ, 247 հազար կոմբայնավար, 214 հազար մեքենավար, 40 հազար մեխանիկ: Նրանցից շատերը բանակ



գնացին պատրաստ վարելու տանկերը, ինքնագնաց հրանոթները և ավտոտրանսպորտը:

✪ Հայրենական մեծ պատերազմի տարիներին գյուղատնտեսության համար երկրում պատրաստվեցին 1 միլիոն 800 հազար մեխանիզատորական կադրեր, այդ թվում ավելի քան 1 միլիոն կանայք: Նրանք փոխարինեցին ռազմաճակատ գնացած իրենց եղբայրներին, հայրերին և ամուսիններին:

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՕՐԵՐԻՆ

✪ Պատերազմի առաջին շրջանում մեր երկրում անցկացվեց պատերազմների և պետությունների պատմության մեջ արդյունաբերության չտեսնված վերաբազավորում: Էվակուացիայի մասշտաբի մասին կարելի է դատել հետևյալ թվից. մեր տրանսպորտը երկրի արևմտյան շրջաններից արևելյան շրջանները փոխադրեց 1 միլիոն 200 հազար վագոն գործարանային սարքավորում և այլ բեռներ: Էվակուացիան ստեղծեց մեր արդյունաբերության վիթխարի աճ արևելքում:

✪ Չտեսնված կարճ ժամկետում ստեղծվեցին ռազմական արդյունաբերության, մե-

տալուրգիական մի շարք նոր ձեռնարկություններ և գործարաններ, ածխահանքեր, էլեկտրոկայաններ և թողարկվեցին մի շարք նոր ագրեգատներ և ցեխեր հին գործարաններում։

✪ 1944 թվին 1940 թվի համեմատությամբ ՍՍՌՄ-ի արևելքում չուգունի ձուլումը ավելացավ 47 տոկոսով, պողպատի ձուլումը՝ 43 տոկոսով, պրոկատի թողարկումը՝ 45 տոկոսով, երկաթահանքի հանույթը 22 տոկոսով։

✪ Պատերազմի երեք տարում մոտ 200 հանքահորեր թողարկվեցին Կուզբասում, Կարագանդայում և Ուրալում։ Ածխի հանույթը Ուրալում գրեթե կրկնապատկվեց։ Կարագանդայում աճեց այն 70 տոկոսով, Կուզբասում՝ ավելի քան 25 տոկոսով։

✪ Պատերազմի ընթացքում կառուցվեցին այնպիսի խոշոր էլեկտրոկայաններ, ինչպիսիք են՝ Չելյաբինսկի, Կրասնոգորսկու, Բեզիմյանսկու, Կրասնոյարսկու, Կիրովո-Չեպեցկայի, Կուզբասի, Ստալինսկու էլեկտրոկայանները և այլն։

✪ 1942 թվի ամռանը, ի պատասխան ընկեր Ստալինի մայիսմեկյան հրամանի, ամբողջ երկրում ծավալվեց Համամիութենա-



կան սոցիալիստական մրցություն։ Մրցության միայն երկու տարում աշխատանքի արտադրողականությունը մեր արդյունաբերության մեջ ընդհանուր առմամբ աճեց 40 տոկոսով, իսկ ավիացիոն արդյունաբերության մեջ— 47 տոկոսով, տանկային արդյունաբերության մեջ— 43 տոկոսով, ռազմամթերքի արդյունաբերության մեջ— 54 տոկոսով, թեթև արդյունաբերության մեջ— 55 տոկոսով։

✪ 1913 թվից մինչև 1917 թվականը հացահատիկային կուլտուրաների ցանքային տարածությունը Ռուսաստանում կրճատվեց ավելի քան 11 տոկոսով, շաքարի ճակնդեղինը— 31 տոկոսով, կարտոֆիլինը— 17 տոկոսով։

Պատերազմի ժամանակ մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը ավելացնում էր իր ցանքային տարածությունը։ 1944 թվի գարնանը մոտ 7 միլիոն հեկտար ավելի ցանքս կատարվեց, քան 1943 թվին, 1944 թվի ցանքսերի ընդհանուր տարածությունը 12 միլիոն հեկտարով ավելի էր քան 1943 թվականին։

## ԻՆՔՆԱԹԻՌՆԵՐ, ՏԱՆԿԵՐ, ՀՐԵՏԱՆԻ

✪ Պատերազմի վերջին երեք տարում մեր երկիրը տարեկան միջին թվով արտադրում էր ավելի քան 30 հազար տանկ, ինքնագնաց հրանոթ և զրահապատ մեքենա, մոտ 40 հազար ինքնաթիռ, բոլոր տրամաչափերի մոտ 120 հազար հրանոթ, մոտ 450 հազար գնդացիր, ավելի քան 3 միլիոն հրացան, մոտ 2 միլիոն ավտոմատ, մոտ 100 հազար ականանետ։

✪ Պատերազմի ընթացքում ինքնաթիռների թողարկումը մեզ մոտ ավելացավ 4 անգամ, տանկերի թողարկումը՝ 7—8 անգամ, հրանոթների թողարկումը՝ 6—7 անգամ, ռազմամթերքի թողարկումը՝ մոտ 4 անգամ, ականանետների թողարկումը՝ գրեթե 8 անգամ։

✪ Եթե համաշխարհային առաջին պատերազմի սկզբին Ռուսաստանը ուներ 7030 հրանոթ, իսկ պատերազմի վերջին 14 հազար հրանոթ, ապա միայն Ստալինի անվան հրետանու այն գործարանը, որի դիրեկտորն է ընկ. Յելյանը, պատերազմի ընթացքում թողարկեց 100 հազար հրանոթ։

✪ Մեր հայրենական հրանոթները, ինք-



նաթիռները, «ԿՎ», «Տ—34» և պատերազմի վերջում ստեղծված «ԻՍ» տանկերը, ականանետները իրենց որակով շատ անգամ գերազանցում էին հակառակորդի տեխնիկային և մահ ու սարսափ էին տարածում գերմանա-ֆաշիստական զավթիչների վրա։



## ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ

### ՌԱԶՄԱՃԱԿԱՏՈՒՄ

★ Մեծ Ստալինի կոչով Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը մեկ մարդու նման ոտքի ելավ իր սովետական Հայրենիքը պաշտպանելու համար։ Հայաստանի հարյուր-հազարավոր զավակներ քաջարի Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերում հերոսաբար մարտնչում էին Հայրենական պատերազմի բոլոր ռազմաճակատներում, խիզախորեն պաշտպանելով մեր մեծ Հայրենիքի պատիվը, ազատությունը և անկախությունը։

★ Հայրենական պատերազմի տարիներին ցուցաբերած հերոսության և խիզախության



համար 42.500 հայ մարտիկներ, սպաներ ու գեներալներ պարգևատրվել են Սովետական Միության մարտական շքանշաններով ու մեդալներով։

★ Սովետական Միության Հերոսների փառապանծ ընտանիքում իրենց արժանի տեղն ունեն հայ ժողովրդի մոտ 100 զավակներ։ Նրանք մարտնչել են՝ հարազատ Մոսկվայի, փառապանծ Ստալինգրադի, արևավառ Ղրիմի, ռևոլյուցիայի օրրան Լենինգրադի, Թամանի համար։ Նրանք մասնակցել են Եվրոպայի ժողովուրդների ազատագրմանը և ֆաշիստական գազանին իրեն իսկ բույն որջում բնաջնջելու համար մղված մարտերին։

★ Ընկեր Ստալինի աճեցրած ստալինյան պանծալի գեներալների թվում կան 54 հայ գեներալներ, որոնք պատերազմի տարիներին անմահության փառքով պսակեցին իրենց անունը, հայ ժողովրդի անունը։

★ Բեռլինի վրա գրոհող և նրա վրա հաղթանակի դրոշ բարձրացրած Կարմիր Բանակի փառապանծ միավորումների թվում իր պատվավոր տեղն է գրավում նաև 89-րդ Թամանյան եռակի շքանշանակիր հայկա-

կան դիվիզիան, որը Կովկասի նախալեռներից մարտերով հասավ Բեռլին։

★ Ֆաշիզմի դեմ մղված պայքարի դրոշի տակ համախմբվեցին արտասահմանում ապրող ամբողջ աշխարհով մեկ սփռված հայերը։

Տասնյակ հազար հայեր դաշնակիցների բանակների շարքերում և Ֆրանսիայի, Հարավսլավիայի, Բուլղարիայի, Ռումինիայի ու այլ պարտիզանական ջոկատներում խիզախորեն, իրենց ժողովրդին արժանավայել կերպով, մարտնչում էին հիտլերյան հորդաների դեմ։

## ԹԻԿՈՒՆՔՈՒՄ

★ Հայրենական պատերազմի ռազմաճակատներում մարտնչող հայ ռազմիկներից ետ չէին մնում նաև թիկունքի հայ աշխատավորները։ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» այս նշանաբանով էին աշխատում Հայաստանի բանվորները, կոլխոզնիկները և աշխատավոր ինտելիգենցիան պատերազմի տարիներին։ Հայաստանը պատերազմի տարիներին եղբայրական մյուս ռեսպուբլիկաների հետ միասին, դարձավ մեր հերոսա-



կան Կարմիր Բանակի զինանոցներից մեկը։

★ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունները այդ տարիներին հաղթահարելով ռազմական ժամանակի բոլոր դժվարությունները, յուրացրին և թողարկեցին 270 նոր տեսակի արտադրանք։

★ 1945 թվին Հայաստանում 86 անգամ ավելի շատ էլեկտրոէներգիա է արտադրվել, քան 1914 թվին։

★ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվին հասավ մոտ 400 միլիոն ռուբլու, 1919 թվի մեկ միլիոն 700 հազար ռուբլու դիմաց։

★ Պատերազմի տարիներին աշխատանքային բարձր խանդավառության և անձնուրաց աշխատանքի օրինակ ցույց տվեց նաև մեր կոլխոզային գյուղը։

1945 թվին, 1940 թվի համեմատությամբ, ռեսպուբլիկայի ցանքսերի տարածությունը աճեց ավելի քան 30.000 հեկտարով։ Պատերազմի չորս տարիների ընթացքում Հայաստանում ավելի քան 5 հազար հեկտար մրգի և 3 հազար հեկտար խաղողի նոր այգիներ են գցվել։ Զգալի չափով ավելացավ

*սոցիալիստական դաշտերի բերքատվությունը։*

*★ Պատերազմի տարիներին խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճեց 3,7 տոկոսով, մանր եղջերավոր անասունների գլխաքանակը — 29,8 տոկոսով։*

*★ Մեծ թափով ծավալվեց ջրանցքների շինարարությունը, որի շնորհիվ 20.000 հեկտար ամայի և անջրդի հողեր ջուր ստացան։*

*★ Կոլխոզների դրամական եկամուտները 1940 թվի 218 միլիոն ռուբլուց 1944 թվին հասան 483 միլիոն 200 հազար ռուբլու։ Կոլխոզների անբաժանելի ֆոնդի հատկացումները 1940 թվի 37,7 միլիոն ռուբլուց 1944 թվին կազմեցին 100 միլիոն ռուբլի։*

*★ Հայրենական պատերազմի տարիներին ստեղծվեց Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիա, որի շուրջը համախմբված են ավելի քան 500 գիտական աշխատողներ։*



## ԴՅՈՒՑԱԶՈՒՆՆԵՐԻ ԲԱՆԱԿԸ

*Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում ավելի քան 10 հազար շարքայիններ, սերժանտներ, սպաներ, գեներալներ, Կարմիր Բանակի զորավարներ արժանացան ամենաբարձր պատվի՝ Սովետական Միության Հերոսի կոչման։*

*Այդ կոչումը շնորհվել է սովետական ժողովրդի առաջնորդ, Գերագույն Գլխավոր Հրամանատար Գեներալիսիմուս Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինին, որի իմաստուն ղեկավարությամբ մեր երկիրը հաղթող դուրս եկավ պատերազմից։*

*Մարշալ Գ. Կ. Ժուկովը, գվարդիայի գնդապետ Ա. Ի. Պոկրիշկինը և գվարդիայի մայոր Ի. Ն. Կոժեդուբը՝ Հայրենիքի առաջ կատարած բացառիկ ծառայությունների համար ստացել են Սովետական Միության եռակի Հերոսի կոչում։*

93 հոգի Սովետական Միության կրկնակի հերոսներ են։

Սովետական Միության Հերոսի պատվավոր կոչում են կրում Կարմիր Բանակի ականավոր զորավարներից 9 հոգի՝ մարշալներ Գ. Կ. Ժուկովը, Կ. Կ. Ռոկոսովսկին, Ա. Մ. Վասիլևսկին. Ա. Ա. Նովիկովը, Ի. Ս. Կոնևը, Լ. Ա. Գովորովը, Կ. Ա. Մերեցկովը, Ռ. Յա. Մալինովսկին, Ս. Կ. Տիմոշենկոն։

Զորքի զանազան տեսակների 286 գեներալներ նույնպես ստացել են Սովետական Միության Հերոսի կոչում։

Սպաների կազմում, կրտսեր լեյտենանտից մինչև գնդապետը, Հերոսի կոչման են արժանացել 6142 հոգի, սերժանտներից՝ 2713, շարքային կազմից՝ 1348 հոգի։

Սովետական Միության Հերոսների շարքերում կան 56 ազգությունների ներկայացուցիչներ, այդ թվում՝ ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, թաթարներ, ղազախներ, հրեաներ, հայեր, վրացիներ, ուզբեկներ և այլն։

Սովետական Միության Հերոսների փառապանծ պլեադայում մենք ունենք 47 կին, որոնք իրենց խիզախությամբ փայլուն էջեր



գրեցին ֆաշիզմի դեմ մղված մեծ պայքարի պատմության մեջ։

Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմից 470 հոգի կրում են Սովետական Միության Հերոսի բարձր կոչումը։

## ԵՌԱԿԻ ՀԵՐՈՍՆԵՐԸ

### Ա. Ի. Պոկրիշկին

Հայրենական պատերազմը գտավ նրան Պրուտ գետի ափին։ Այստեղ նա ստացավ իր առաջին մարտական մկրտությունը, այստեղ նա խփեց հակառակորդի առաջին կործանիչը։ Այդ օրվանից նրա փառքը, որպես խիզախ ու անվեհեր օդաչուի, աճեց արագորեն։ Սակայն նրա անունը մի առանձնակի փայլով հռչակվեց 1943 թվին Կուբանում։ Հինգ ամիսների լարված մարտերի ընթացքում, այն զորամասը, որի հրամանատարն էր Պոկրիշկինը, ոչնչացրեց գերմանական 200 կործանիչ և ռմբակոծիչ։ Ինքը Պոկրիշկինը այն ժամանակ անձամբ ոչնչացրել էր 30 ինքնաթիռ։ Սակայն այդ թիվը գնալով ավելանում էր։ Վերջին 59-րդ գերմանական ինքնաթիռը Ալեքսանդր Իվանովիչը խփեց Լվովի տակ։

*Իրեն երրորդ «Ոսկե աստղ» մեդալով պարգևատրելու լուրը Պոկրիշկինը ստացավ Վիսլայի ափին, լեհական մի գյուղում։*

## Ի. Ն. Կոժեդուբ

*... 17 «Յունկերս—87», 20 «Ֆոկե-Վուլֆ—190», 19 «Մեսսերշմիտտ—109», 2 «Խեյնկել—111», 3 «Խեյնկել—129» և 1 «Պեւ—29», ընդամենը 62 ինքնաթիռ է խփել, երկրորդ, ոչ պակաս հռչակված օդաչու, գվարդիայի մայոր Իվան Նիկիտիչ Կոժեդուբը։*

*Նա միայն 25 տարեկան է, բայց իր ամբողջ գիտակցական կյանքը նվիրել է ավիացիային։*

*1941 թվին սերժանտի կոչումով նա ավարտեց Չուգուևի ավիացիոն դպրոցը։ Առաջին անգամ նա ռազմաճակատ գնաց 1943 թ. մարտի 13-ին։ Այդ օրվանից երկու շաբաթ անց, նա մարտական մկրտություն ստացավ՝ հենց իր օդանավակայանի վրա՝ կովի բռնվելով հակառակորդի ինքնաթիռների դեմ։ Նա առաջին գերմանական ինքնաթիռը խփել է Կուրսկի ելուստի համար մղված հերոսական մարտերի օրերին։ Երբ Կարմիր Բանակի հարձակվող զորքերը մոտենում էին Պոլտավային, Կոժեդուբը արդեն 9-րդ ինքնաթիռն էր խփել։ Այնուհետև օրըստօրե ավելանում էր հերոս օդաչուի մարտական հաշիվը։ Նա անխնա ոչնչացնում էր գերմանական օդային ավազակներին՝ Մերձբալթիկայում, Լեհաստանում, Գերմանիայում։*



———○———

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

## (ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿԱՆՔ)

Պատմության մեջ առաջին անգամ մայիսմեկյան պրոլետարական ցույցեր են եղել 1886 թվականին Ամերիկայի Միացյալ Նահանգներում։ Ցուցարար բանվորները գործարանատերերից պահանջեցին սահմանել 8-ժամյա բանվորական օր և բարելավել բանվորների տնտեսական դրությունը։ Բայց գործարանատերերը մերժեցին բանվորների այդ համեստ պահանջները։

Բանվորները այդ մերժմանը պատասխանեցին ընդհանուր գործադուլի կոչով։ Առաջինը գործադուլ արեցին երկաթուղային բանվորները, որը արագությամբ տարածվեց մի շարք նահանգներում։ Միայն Չիկագոյում գործադուլին մասնակցեցին ավելի քան 600 հազար բանվորներ։

1888 թվականի դեկտեմբերին Ամերիկ-



յան աշխատանքի ֆեդերացիայի Սան-Լուիում գումարված կոնգրեսը որոշեց՝ ի հավերժացումն Չիկագոյի բանվորների հերոսական գործադուլի՝ ամեն տարի Մայիսի մեկին անցկացնել բանվորների համերաշխության մարտական ցույցեր։ Սան-Լուիի կոնգրեսից մի քանի ամիս հետո նույնպիսի որոշում ընդունեց Ֆրանսիայի պրոֆմիությունների 3-րդ կոնգրեսը։

1889 թ. Երկրորդ Ինտերնացիոնալի առաջին կոնգրեսը որոշեց մայիսի մեկը դարձնել միջազգային պրոլետարիատի մանիֆեստացիայի միասնական օր։

Առաջին անգամ միջազգային պրոլետարիատի այդ տոնը նշվեց 1889 թ. Անգլիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Իսպանիայում և մի շարք այլ երկրներում։

Հետագայում, Երկրորդ Ինտերնացիոնալի պարագլուխները, հրաժարվեցին կատարել առաջին կոնգրեսի որոշումը և 1914 թ. իմպերիալիստական պատերազմի ժամանակ վերացրին մայիսմեկյան տոնակատարությունը։

Մայիսմեկյան տոնակատարությունները վերածնվեցին միայն Լենինի, Ստալինի

ստեղծած Կոմունիստական Երրորդ Ինտերնացիոնալի դրոշի տակ։

Մայիսմեկյան տոնակատարությունները հսկայական ռևոլյուցիոն նշանակություն ունեցան Ռուսաստանի բանվորական շարժման պատմության մեջ։ Առաջին անգամ Ռուսաստանում մայիսմեկյան մայովկա տեղի ունեցավ 1890 թ. Վարշավայում, որը վերածվեց 10 հազարանոց բանվորական հսկայական գործադուլի։ 1891 թ. մայիսմեկյան ցույցեր տեղի ունեցան Պետերբուրգում և Վարշավայում։

Մոսկվայում առաջին անգամ մայիսի մեկը տոնվեց 1895 թ.։ Այդ տոնի առթիվ բաց թողնված երեք պրոկլամացիաներն էլ բանվորներին ցարիզմի դեմ քաղաքական պայքարի կոչ էին անում։ 1898 թ. մայիսմեկյան մայովկաներ տեղի ունեցան Ռուսաստանի համարյա բոլոր քաղաքներում։1898 թ. մայիսի մեկին ընկեր Ստալինի ղեկավարությամբ գործադուլ արեցին Թբիլիսիի երկաթուղային արհեստանոցների բանվորները։ 1900 թ. մայիսի 1-ին հսկայական ցույց տեղի ունեցավ Խարկովում, որին մասնակցում էին ավելի քան 10 հազար բանվորներ։ Այդ ցույցի մասին Վ. Ի.



Լենինը գրել է. «Այն հեքիաթը, թե իբր ռուսական բանվորները դեռևս չեն հասունացել քաղաքական պայքարի համար, թե իբր նրանց գլխավոր գործը զուտ տնտեսական պայքարն է...այդ հեքիաթը վճռականապես հերքվում է Խարկովի մայովկայով»։

1901 թվականի մայովկաների մեջ կարևորագույն նշանակություն ունեցավ Թբիլիսիի բանվորական մայիսմեկյան ցույցը՝ ընկեր Ստալինի ղեկավարությամբ։ Ցուցարարներն իրենց հետ տանում էին կարմիր դրոշներ, գիտական սոցիալիզմի հիմնադիրներ՝ Մարքսի, Էնգելսի նկարները։ Ցույցը ցրվեց միայն զենքի ուժով։ 1901 թ. մայիսին գործադուլ արեցին Պետերբուրգի Օբուխովյան ռազմական գործարանի բանվորները, որը վերածվեց արյունահեղ ընդհարման—բանվորների և ցարական զորքի միջև։

Մայիսմեկյան օրերը 1905—1907 թ. թ., ռուսական առաջին ռևոլյուցիայի շրջանում, օգտագործվեց բոլշևիկների կողմից՝ բանվորներին կազմակերպելու և ցարիզմի դեմ նրանց գրոհի տանելու համար։

1912—1914 թ. թ. ռևոլյուցիոն վերելքի տարիներին մայիսմեկյան ցույցերը, որոնց

ղեկավարում էր Լենինի-Ստալինի պարտիան, հսկայական նշանակություն ունեցան բանվորների կազմակերպման և պարտիայի շուրջը նրանց համախմբելու համար։ Այդ տարիներին բանվորական ցույցերի և գործադուլավորների պահանջների մասին ընկեր Ստալինը գրել է. «մենք չենք պաշտում «ոսկե կուռքը»։ Մեզ պետք չէ բուրժուաների և կեղեքիչների թագավորությունը։ Նզո՛վք և մա՛հ կապիտալիզմին՝ աղքատության և արյունահեղությունների իր սարսափներով։ Կեցցե՛ աշխատանքի թագավորությունը։ Կեցցե՛ սոցիալիզմը»։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ մայիսմեկյան ցույցերում և գործադուլային պայքարում կոփված ռուսական պրոլետարիատը 1917 թ. տապալեց կալվածատերերի և կապիտալիստների լուծը Ռուսաստանում և ստեղծեց բանվորների ու գյուղացիների իշխանություն։

Հոկտեմբերից հետո անցած մայիսները եղել են մեր հաղթանակների և նվաճումների հանրագումարի ամիսներ։

1941—1945 թ. թ. Հայրենական մեծ պատերազմի տարիների մայիսները եղան մեր ժողովրդի միասնության, համախմբվածու-



թյան և թշնամուն վճռական հարվածներ տալու մարտական տոներ։

Այս տարի, պատերազմի հաղթական ավարտումից հետո, առաջին անգամ խաղաղ պայմաններում տոնում ենք մայիսի մեկը։ Դա կլինի հաղթանակի և նվաճումների տոն. ամբողջ աշխարհի առաջավոր մարդկության հզոր ցույց՝ հանուն խաղաղության ամրապնդման, հանուն բոլոր ժողովուրդների հետագա բարօրության։

---O---

## ՍԵՎ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին օրենքը նախատեսում է՝ ապահովել ծանր արդյունաբերության և երկաթուղային տրանսպորտի առաջնահերթ վերականգնումը և զարգացումը, առանց որի հնարավոր չէ ՍՍՌՄ ժողովրդական ամբողջ տնտեսության արագ ու հաջող վերականգնումը և զարգացումը, ՍՍՌՄ ժողովուրդների նյութական բարեկեցության բարձրացումը: Ստալինյան նոր հնգամյակում որոշակի տեղ է հատկացված սև մետալուրգիային: Ընկեր Ստալինի հանճարեղ բնորոշմամբ «մետաղը մեր արդյունաբերության հիմքերի հիմքն է...»:*

*Հայրենական մետալուրգիայի պատմությունը չգիտի այնպիսի մեծագույն թռիչք, որպիսին նախատեսված է կատարելու ներ-*



*կա հնգամյակում: Հնգամյակում վերականգնըվելու, կառուցվելու և գործարկվելու են՝*

*45 դոմենյան հնոց,*
*165 մարտենյան հնոց,*
*15 կոնվերտոր,*
*90 էլեկտրական հնոց,*
*104 պրոկատի հաստոց,*
*63 կոքսի մարտկոց:*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ.թ. հնգամյա պլանի մասին օրենքում ասված է՝ «Սև մետալուրգիայի ասպարեզում, որի ծավալը շատ բանով որոշում է ՍՍՌՄ ամբողջ ժողովրդական տնտեսության վերականգնումը և զարգացումը, չուգունի, պողպատի ձուլման և գլանվածքի արտադրության նախապատերազմյան մակարդակը 1950 թվին գերազանցել 35 տոկոսով»:*

*Հինգ տարի հետո, 1950 թվին, սև մետալուրգիան պետք է տա երկրին՝*

*19,5 միլիոն տոննա չուգուն,*
*25,4 միլիոն տոննա պողպատ,*
*17,8 միլիոն տոննա պրոկատ,*
*1,35 միլիոն տոննա ռելս,*
*40 միլիոն տոննա երկաթահանք,*
*30 միլիոն տոննա կոքս:*

Ստալինյան երեք հնգամյակների տարիներին վիթխարի չափերով աճեց ու զարգացավ մեր սև մետալուրգիան: Ահա թե ինչ է ներկայացնում իրենից այդ զարգացման պատկերը՝ ցարական Ռուսաստանի ամենաբարձր մակարդակի՝ 1913 թ. հետ համեմատած:

1913 թվին ձուլվել է 4,2 միլիոն տոննա չուգուն, 1920 թ. 0,1 միլիոն տոննա, 1927—28 թ.թ. 3,3, 1932 թ. 6,2, 1937 թ. 14,5, 1940 թ. 15,0 տոննա, իսկ 1950 թվին ձուլվելու է 19,5 միլիոն տոննա չուգուն: 1913 թվին ձուլվել է 4,2 միլիոն տոննա պողպատ, 1920 թ. 0,2 միլիոն տոննա, 1927—28 թ. թ. 4,2, 1932 թ. 5,9, 1937 թ. 17,7, 1940 թ. 18,3 տոննա, իսկ 1950 թվին ձուլվելու է 25,4 միլիոն տոննա պողպատ:

Բոլշևիկյան պարտիայի և ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի ղեկավարությամբ մեր երկրում ստեղծվել է հզոր ինդուստրիա. «Մենք այժմ մետաղի երկիր ենք» (ՍՏԱԼԻՆ): Աճել է սև մետալուրգիան: Երբ հանրագումարի էր բերվում առաջին հնգամյակի արդյունքները, ընկեր Ստալինը ասաց.

«Մենք չունեինք սև մետաղագործություն,



երկրի ինդուստրացման հիմքը: Այժմ մենք ունենք այն»:

Հնգամյա պլանով նախատեսված է վերականգնել Հարավի խոշորագույն մետալուրգիական գործարանները, միաժամանակ տարածել մետալուրգիական բազան՝ Ուրալում, Սիբիրում, Հեռավոր Արևելքում: Ստեղծվելու են նոր՝ մետալուրգիական կենտրոններ՝ Վրաստանում, Ադրբեջանում, Ղազախստանում, Լենինգրադի շրջանում:

Ժամանակակից տեխնիկան — բարձր արագության, բարձր ջերմաստիճանի, բարձր ճնշման տեխնիկա է: Մեքենաները, որոնք ստեղծվում են մեր ժամանակում՝ ինքնաթիռներ, ավտոմոբիլներ, դազգահներ և տուրբիններ, ֆիզիկական ու քիմիական սարքերը և ապարատները պետք է համապատասխանեն այդ նոր պահանջներին: Իսկ մեքենաները պատրաստվում են մետաղից: Ահա թե ինչու ներկա հնգամյակում այդքան կարևոր տեղ է հատկացվում սև մետալուրգիայի զարգացմանը:

Ներկա հնգամյակի պլանների կատարումը խոշորագույն քայլ կլինի դեպի առաջ, դեպի այն ուղին, որը մեզ մատնացույց է արել ընկեր Ստալինը Մոսկվայի քաղաքա-

յին Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում արտասանած իր հանճարեղ ճառում։

«Ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակամիջոցի պլաններին,— ասում է ընկեր Ստալինը,— ապա պարտիան մտադիր է կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը մեզ հնարավորություն տար մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ, երեք անգամ։ Անհրաժեշտ է՝ մենք հասնենք այն բանին, որ մեր արդյունաբերությունը կարողանա տարեկան արտադրել մոտ 50 միլիոն տոննա չուգուն, մոտ 60 միլիոն տոննա պողպատ, մոտ 500 միլիոն տոննա ածուխ, մոտ 60 միլիոն տոննա նավթ։ Այդ պայմանով միայն կարելի է համարել, որ մեր Հայրենիքը ապահովված կլինի ամեն տեսակ պատահականություններից։ Դրա համար կպահանջվի գուցե երեք նոր հնգամյակ, եթե ոչ ավելի։ Բայց այդ բանը կարելի է անել, և մենք պետք է այդ անենք»։





## ԼԵԶՎԻ ԵՎ ԽՈՍՔԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

Լեզուն նույնչափ հին է, որքան և գիտակցությունը. լեզուն— այդ պրակտիկ, նաև ուրիշների համար գոյություն ունեցող, հետևապես և ինձ համար գոյություն ունեցող, ռեալ գիտակցությունն է. և լեզուն, գիտակցության նման, ծագում է այլ մարդկանց հետ հաղորդակցվելու պահանջից, անհրաժեշտ կարիքից։

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ

...Որքա՜ն գեղեցիկ է ռուսաց լեզուն. նա ունի գերմաներենի բոլոր առավելությունները, առանց նրա սարսափելի կոպտության։

Ֆ. ԷՆԳԵԼՍ

Լեզուն մարդկային հաղորդակցության կարևորագույն միջոցն է։

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Մենք սիրում ենք մեր լեզուն և մեր հայրենիքը…*

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Տուրգենևի, Տոլստոյի, Դոբրոլյուբովի, Չերնիշևսկու լեզուն— մեծ է ու հզոր։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ

*Միայն Լենինն էր կարողանում ամենախճճված բաների մասին գրել այդպես հասարակ ու պարզ, սեղմ ու համարձակ— երբ ամեն մի ֆրազ ո՛չ թե խոսում, այլ կրակում է…*

*Համոզելու անսովոր ուժը, փաստարկման պարզությունն ու համառոտությունը, կարճ ու ամենքին հասկանալի ֆրազներ, ցուցամոլության բացակայությունը, գլխապտույտ ժեստերի և տպավորություն գործելու ձգտող էֆեկտավոր ֆրազների բացակայությունը,— այդ ամենը Լենինի ճառերը նպաստավոր կերպով տարբերում էր սովորական «պառլամենտական» հռետորների ճառերից։*

Ի. ՍՏԱԼԻՆ

*Լեզուն զարգացման և պայքարի զենք է։*

Ի. ՍՏԱԼԻՆ



*Ահա, եթե հարցնեին ինձ, թե ո՞վ ամենքից լավ գիտե ռուսաց լեզուն, ես կպատասխանեի— Ստալինը։ Նրանից պետք է սովորել լեզվի ժլատություն, պարզություն և բյուրեղյա մաքրություն։ Փորձեցե՛ք Ստալինի արտահայտած որևէ մի միտք շարադրել ավելի սեղմ ձևով։*

Մ. ԿԱԼԻՆԻՆ

*Հռոմեական կայսր Կարլ հինգերորդը ասում էր, որ իսպաներենով վայել է խոսել աստծո հետ, ֆրանսերենով՝ բարեկամների, գերմաներենով՝ հակառակորդների, իտալերենով՝ կանանց սեռի հետ։ Բայց եթե նա տիրապետեր ռուսաց լեզվին, ապա իհարկե, դրան կավելացներ, որ այդ լեզվով վայել է խոսել բոլորի հետ։ Քանի որ նրա մեջ կգտներ իսպաներենի ճոխությունը, ֆրանսերենի կենդանությունը, գերմաներենի ամրությունը, իտալերենի քնքշությունը, բացի դրանից հունարենի և լատիներենի հարստությունը և արտահայտությունների մեջ ուժեղ հակիրճությունը։*

Մ. ԼՈՄՈՆՈՍՈՎ

Հին երգերի, հեքիաթների և այլնի ուսումնասիրությունը անհրաժեշտ է ռուսաց լեզվի առանձնահատկությունը կատարելապես ըմբռնելու համար։

Ա. ՊՈՒՇԿԻՆ

Տարակուսանքի օրերին, հայրենիքիս բախտի մասին ծանր մտորումների օրերին,— դու ես ինձ միակ նեցուկ ու հենարան, օ՜, մե՛ծ, հզո՛ր, ճշմարտացի՛ և ազատ ռուսաց լեզու...

Ի. ՏՈՒՐԳԵՆԵՎ

Հավատա՛ հզոր ռուսական լեզու ստեղծող քո ժողովրդին, հավատա՛ նրա ստեղծագործ ուժերին։

Մ. ԳՈՐԿԻ

Խուսափիր նուրբընտիր լեզվից։ Լեզուն պետք է լինի պարզ և ճշգրիտ։

Ա. Պ. ՉԵԽՈՎ

Լեզուն անշուշտ ամենաազնիվ գործիքն է, որի միջոցով մի մարդ իր ներքին հոգեվիճակն է արտահայտում այլ մարդկանց։ Առանց լեզվի ո՛չ անհատը, ո՛չ էլ մանա-



վանդ ժողովուրդը ի վիճակի չէ իր մտքերն ու զգացմունքները հաղորդելու ուրիշներին, մանավանդ ավանդելու հաջորդ սերունդներին։

Խ. ԱԲՈՎՅԱՆ

...Դպրոցն ու գրականությունն ուրիշ բան չեն, եթե ոչ ամենից առաջ լեզու։

Լեզուն է ամեն մի ժողովրդի ազգային գոյության ամենախոշոր փաստը, ինքնուրույնության ու հանճարի ամենախոշոր դրոշմը, պատմության հեռավոր անցյալի կախարդական բանալին, հոգեկան փարթամությունների ամենաճոխ գանձարանը, հոգին ու հոգեբանությունը։

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

—o—

## Երկու խոսքով

✪ Դուք վերցնում եք հեռախոսափողը, սպասում եք ազդանշանի, ապա հավաքելով անհրաժեշտ համարները, լսում եք ձեզ լավ ծանոթ ձայնը, որը հանկարծ ասում է. «Ես հիմա տանը չեմ։ Կլինեմ երեկոյան ժամը 10-ին։ Այժմ համառոտակի ասացեք. ո՞վ է զանգահարում և երբ ես վերադառնամ, ինչպե՞ս կապվեմ ձեզ հետ»։

Այդպիսի՞ պատասխանը ձեզ խիստ զարմանալի կթվա։ Սակայն դա ինչ որ ֆանտաստիկ բան չէ։ Ձեզ պատասխանողը այն ապարատն է, որը հնարել է սովետական ռադիոինժեներ Դեմիխովսկին և տվել նրան Դեմիֆոն անունը։

Դեմիֆոնը մի այնպիսի ապարատ է, որն ունի հաղորդող և ձայնագրող սարքավորում։ Այդ ապարատը կցվում է սովորական էլեկտրոպատեֆոնին, ապա էլեկտրոլարով կապվում հեռախոսին։ Միացնելով Դեմիֆո-



նը և դնելով նախապես թելադրած տեքստով պլաստինկան, դուք լսում եք ձեր ծանոթի հաղորդումը և տալիս ձեր պատասխանը։ Այդ պատասխանը նույնպես գրի է առնվում Դեմիֆոնի միջոցով, որովհետև այդ ապարատը, ինչպես ասվեց, ունի ընդունող և հաղորդող հատկություններ։

✪ Պյոտր Առաջինի ժամանակ, 1703 թ. հունվարին, սկսվեց հրատարակվել ռուսական առաջին լրագիրը, որը կոչվում էր՝ «Տեղեկագիր ռազմական և այլ գործերի մասին»։

Պյոտրը սիրում էր իր լրագիրը։ Նա ժամանակ էր գտնում անձամբ խմբագրել այն և նույնիսկ՝ կատարել առաջին համարների սրբագրությունը։

✪ Մարդ եթե կանգնի Հյուսիսային բևեռում՝ քանիմեկ կիլոմետր ավելի մոտ կգտնվի երկրագնդի կենտրոնին, քան՝ միջօրեականի վրա։

✪ Առաջին էքսպեդիցիան դեպի Նեղոսի ակունքները ուղարկվել է մեր թվագրության առաջին դարում՝ հռոմեական կայսր Ներոնի կողմից։

● Ժամանակը ճիշտ որոշելու համար գոյություն ունեն աստղաբաշխական ժամա-

ցույցներ։ Այդ ժամացույցները տեղավորված են խոր ներքնահարկերում։ Նրանք ծածկված են ապակե կափարիչներով, որոնց տակից հանված է օդը, որպեսզի հեռացվի մթնոլորտային ճնշման տատանումների ազդեցությունը։

Այդ ժամացույցները տարվա մեջ կարող են միայն երեք վայրկյան ետ մնալ կամ առաջ գնալ։ Դրա համար էլ նրանց աշխատանքը աստղաբաշխական զանազան գործիքների միջոցով պարբերաբար ստուգվում և ճշտվում է։



# ՄԵՐ բառարանը

ԷՔՍՊԱՆՍԻԱ.— Ընդարձակում, տարածում (սահմաններ, ազդեցություն և այլն)։ Ռազմական էքսպանսիա.— ուրիշ երկրների տերիտորիայի գրավումը կամ արդեն գրավված շրջանների հետագա ընդարձակումը։ Քաղաքական էքսպանսիա.— ուրիշ երկրներին իր ազդեցության ենթարկելը։ Տնտեսական էքսպանսիա.— ուրիշ երկրներում շուկաների գրավումը։ Էքսպանսիա տերմինը գործածվում է նաև նոր գաղութներ ու տերիտորիաներ զավթելու ձգտումը նշելու համար։ Էքսպանսիայի քաղաքականությունը հատուկ է բոլոր իմպերիալիստական պետություններին (լատին. «էքսպանսիո» բառից)։

ԻՆՏԵՐՎՅՈՒ.— 1. Մամուլի ներկայացուցչի զրույցը պետական, հասարակական գործչի հետ այնպիսի հրատապ հարցերի շուրջը, որոնք քաղաքական կամ հասարակական հետաքրքրություն են ներկայացնում։

2. Այն լրագրական հոդվածը, որի մեջ բերվում է այդ զրույցի բովանդակությունը (անգլ. «ինտերվյու» բառը):

ԿԱԲԵԼ.— 1. Մետաղյա լարերից բաղկացած չվան (մալուխ), որ պատած է մեկուսիչ և պաշտպանող պատյանով ու գործ է ածվում հեռագրական կամ հեռախոսային լարը գետնի կամ ծովի տակով անցկացնելու և ընդհանրապես էլեկտրական հոսանքը հաղորդելու համար: 2. Պողպատյա պարան (հոլ. «կաբել» բառը):

ԿԻԼՈՎԱՏ.— Էլեկտրական հոսանքի ուժի միջազգային չափ, հավասար հազար վատտի կամ 1,33 ձիու ուժի (անգլ. «կիլոուատ» բառից):

ՄԱԳԻՍՏՐԱԼ.—1. Հաղորդակցության ճանապարհների հիմնական, գլխավոր գիծը: 2. Գլխավոր խողովակը կամ կաբելը հեռախոսական, հեռագրական, էլեկտրական, ջրանցքների կամ կոյուղիների ցանցում (լատին. «մագիստրալիս» բառից):

ՆՈՎԱՏՈՐ.—Որևէ ասպարեզում նորություններ մտցնող անձը, վերանորոգող, վերսկսող (լատին. «նովատոր» բառը):

ՈՒԼՏԻՄԱՏՈՒՄ.— Որոշ ու կտրուկ պահանջ, որ մի պետություն անում է ուրիշին:



Ուլտիմատումին զուգորդում է հետևանքների մասին արված նախազգուշացումը, որով նշվում է պահանջները կատարելու ժամանակը և որի չկատարելը առաջ է բերում դիվանագիտական հարաբերությունների խզում կամ պատերազմ: 2. Ընդհանրապես որևէ սպառնալիքի հետ զուգորդվող պահանջ, վերջնագիր (լատին. «ուլտիմուս» բառից):

ՏՈՏԱԼ.—1. Ընդհանուր, կատարյալ, լրիվ: 2. Ամբողջական, համապարփակ: Տոտալ պատերազմ, որի ընթացքում հակառակորդները իրար հաղթելու համար իրենց վերջին ուժերն են լարում ու վերջին միջոցները գործադրում. տոտալ պատերազմի ընթացքում օգտագործվում են մարդկային և նյութական բոլոր միջոցներն ու երկրի պաշարները: Հակառակորդի դեմ տոտալ պատերազմ վարելը նշանակում է՝ բոլոր միջոցների և եղանակների գործադրում, ավիացիայով ու քիմիական միջոցներով հակառակորդի խոր թիկունքում ընկած արդյունաբերական և խիտ ազգաբնակչություն ունեցող քաղաքների քանդում ու ոչնչացում, անխնա պայքար ծովում, թշնամու բլոկադա, շպիոնաժի, պրովոկացիայի, դիվերսիաների լայն գործադրում՝ թշնամուն ներսից քաղաքակա-

նապես և տնտեսապես քայքայելու նպատակով: Տոտալ պատերազմի ընթացքում թիկունքի և ռազմաճակատի միջև եղած տարբերությունները վերանում են (լատին. «տոտալ» բառը):

ՏՈՐԻ.— 1. Քաղաքական պարտիայի անունը Անգլիայում (17—19-րդ դարեր), որը նախորդել է ժամանակակից պահպանողական պարտիային: 2. Պահպանողական (անգլիական պառլամենտում, (անգլ. «տորի» բառը):



*

# ԹԵՄԱՏԻԿ ՊԼԱՆ

## ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1946—1950 Թ. Թ. ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԵԼԻՔ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ

1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հնգամյա պլանի հիմնական խնդիրները:

2. Արդյունաբերության և տրանսպորտի զարգացման պլանը նոր հնգամյակում:

3. ՍՍՌՄ գյուղատնտեսության զարգացման պլանը 1946—1950 թ. թ.:

4. Ժողովուրդների նյութական և կուլտուրական կենսամակարդակի բարձրացումը որպես 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի կարևորագույն խնդիրը:

5. Միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության վերականգնման

ու զարգացման հնգամյա պլանը որպես ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիր։

6. ՍՍՌՄ-ում սոցիալիստական հասարակարգի կառուցումը ավարտելու ուղիները և աստիճանաբար սոցիալիզմից կոմունիզմին անցնելը։

7. Սովետական գիտության դերը մեր Հայրենիքի հետագա ծաղկման համար մղվող պայքարում։

—○—

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռ. 23—30։

ՎՖ 00893, պատվեր № 500, տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 15/IV 1946թ.

ՀՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան